# ՀԱՅԿԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱԳԻՏՈՒԹԻՒՆ

ՅԱՐԱԲԵՐՈՒԹԵԱՄԲ

## Աշխարհագրական Համազգային

## Երրորդ Ժողովոյն եւ Հանդիսին

ՈՐ Ի ՎԵՆԵՏԻԿ



ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

1881

Alishan, Ghewond M. 1820-1901
Haykakan ashkharhagitutiwn.

# ՀԱՅԿԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱԳԻՏՈՒԹԻՒՆ

ՅԱՐԱՔԵՐՈՒԹԵԱՄԲ

**Աշխարհագրական Համազգային**

**Երրորդ Ժողովոյն եւ Հանդիսին**

*ՈՐ Ի ՎԵՆԵՏԻԿ*

ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

1881

Թերևս, եթէ ոչ յանդուգն, նորանշան բան մը համարուի, որ այնքան մեծամեծ և մեծապանծ ազգաց, տէրութեանց և ընկերութեանց մէջ, որոնք ազնուութեան և հանճարոյ փոխադարձ մրցանօք կը ներկայացընեն իրենց աշխարհագրական գիտութեանց գանձը՝ այս ազնուական և արժանաւոր Վենետիկ քաղաքիս մէջ, մտնէ նաև այն ազգն կամ երկիրն, որ իրեն վաղեմի ազնուականութեամբն հանդերձ, հիմայ Ասիոյ Նախնի ժողովրդոց տխուր նըշխարաց մէջ կը խառնուի. որոնք 'ի սկզբան ժամանակաց բռնած էին այն կեդրոնատեղին, յորմէ կը ծաւալէր աշխարհի վարչութեան շարժիչ զօրութիւնն, մինչդեռ այսօրուան արթուն զուարթունն Եւրոպա՝ կարծես քնալից՝ դեռ ևս խանձարրոց քաղցր երազներով կը զբօսնոյր։ Արդարև վերջին տարիներուս մէջ, և յետ վերջին պատերազմաղորդ բախմանն Երասխայ և Եփրատայ հովտաց, ոչ սակաւ կը

լսուի թէ՝ Հայ ժողովրդեան և թէ իր վաղեմ-
ջական հայրենեաց անունն, բայց ոչ ա-
ռանց սրտառուչ յիշատակաց և երկիւղա-
լի անստուգութեանց ։ Սակայն 'ի բաց
թողլով իր աւելի կամ նուազ բարեբաղդ-
անցեալն, և չհետապօտելով բնաւին մը-
թին ապագայն, ներելի ըլլայ ինձի Վե-
նետկեան այս զուարթ և միանգամայն ու-
սումնական հանդիսիս առջև յիշեցընել, որ
յատկապէս արևելեան ըսուած ազգերէն,
Հայք միայն եղած են, որ անընդհատ վեց
դարերու յաջորդութեամբ (ԺԳ-էն սկսե-
լով), ոչ միայն վաճառականական վերա-
բերութիւն ունեցեր են Վենետկոյ հետ,
այլ և նախապատիւ քան զամենեսին սի-
րելի եղած են այս իշխողիս Ադրիականի, որ
իրեն սոսկալի Ծերակուտին զանազան վճ-
ռոց մէջ, կը սեփականէր անոնց սիրելա-
գոյն [1] և բազմերախտ անուանակոչու-

1 Հրովարտակով 1640 Օգոստոս 28ին, Ծերա-
կոյտն Վաճառուց վրայ եղող Հինգ Գիտնոց Թե-
լադրութիւնը կը հաստատէ, « այս բարեվաստակ
(benemerita) Ազգին ամենայն դիւրութիւն
ընել, որ դրամի մեծ գումարներ կու տայ կ'առ-
նու », և այլն։ Ուրիշ Հրովարտակով մը (30
օգոստ. 1710), կ'ըսէ, զիջանել « աղաչանաց բա-
րեվաստակ և սիրելագոյն (prediletto) Հայ Ազգին»,
և այլն։ — Ներքին Հոգաբարձուք իրենց մէկ
ծանօթութեան մէջ, 1764 տարւոյն (17 մարտ)
կը յիշեն, « Ազգ մը՝ որ այնչափ բարեվաստակ է

թիւնքը։ Հին բարեկամութիւնն և փոխադարձ շահն որ զօրացած էր մէկ դիէն ԺԳ և ԺԴ դարուց մեջ Կիլիկիոյ Հայ Թագաւորաց զանազան առանձնաշնորհութեամբք, և միւս կողմանէ Ծերակուտին ոչ սակաւ ցայտարարութեամբք և վճռօք, Այս Արքունեաց մէջ երկար ժամանակ իրարու յաջորդող Վենետիկեան Դեսպաններէն և Պայլերէն[1], պնդեցաւ և եւս հետագայ դարուց մէջ, երբ Հայք իրենց անկախութիւնը կորսնցուցին, վաճառականութեան միջոցով. այնպէս որ Կրետէի երկարատև պատերազմաց տաժանելի տարիներուն մէջ, կը խոստովանէին Հասարակապետութեան իմաստուն խորհրդականք, որ իրենց այն ժամանակի վաճառականութեան գրեթէ միակ զարգացուցիչն էր Հայոց ձեռքով եղած ելումուտքն, որով և ամենևին զանց չէին ըներ որ և իցէ գիջողութիւն ընելու Հայոց[2]։

որչափ ընդունելի (accetta) և օգտակար (utile) Ձերում Պերճութեան»։

1 Հայկական Կիլիկիոյ մայրաքաղաք, հաստատեալ 'ի Լևոնէ Ա Արքայէ (1187-1219).

2 «Այս Ազգին օգնելն, որ առևտրութեամբ կը յաճախէ այս Քաղաքիս մէջ վաճառականութեամբ, և մասնաւորապէս Մետաքսի առևտրութեամբ, հասարակաց ամենուն օգտակար է»։ (Հինգ Գիտունք առ Ծերակոյտն, 24 ապրիլ, 1643)։ – «Հայոց վաճառականութիւնն,

Իսկ այս վերջիններս ոչ միայն յօժարակամ դէպ 'ի հիւրընկալ ափունքը կը յաճախէին, այլ և ամեն տարի իրենցմէ զոմանս հօն կը թողուին, որոնք հետզհետէ հօն իրենց բնակութիւնն հաստատեցին և ընտանիք ձևացան. մանաւանդ վերջին անցած երեք դարերուս մէջ, յորս կը հանդիպինք Վենետկոյ եկեղեցեաց Արձանագրոց մէջ նշանակուած 200էն աւելի ամուսնական դաշինք հայկազնի մը և վենետկուհւոյ մը մէջ, և փոխադարձ։ Սակայն եթէ բազմաթիւ էին Վենետկոյ մէջ հաստատուող Հայք, անհամեմատ աւելի

որ այս ժամանակներուս մէջ թով կրնայ ըսուիլ, կարենայ առաւելապէս յորդել այս Քաղաքս, և անոնք փութով ղրկուին », և այլն։ (Նոյնք, 13 օգոստ. 1651)։ – «Ներկայ ժամանակաց կացութեան մէջ, յորում քաղաքիս վաճառականութիւնն շատ ամփոփուած է, և մեծաւ մասամբ այս Ազգը զայն ոտքի վրայ կը բռնէ, Մետաքսի և Արևելից վաճառականութիւնն իրենց ձեռքն ըլլալով, հանգերձ շահով Մտից և Ելից մաքսից Ձ. Պերճ.», և այլն։ Նոյնք, 13 յուլիս, 1658։ – Ծերակոյտն, 8 օգոստ. 1648 Հրովարտակով կը հաստատէ Հինգ Գիտնոց ազգարարութիւնը, «մաքսից օգտին և շահուն ...» համար, « մանաւորապէս ներկայ ժամանակաց կացութեանց նկատմամբ, յորս վաճառականութիւնն շատ ամփոփուած է, և մեծաւ մասամբ ոտքի վրայ կեցած է նոյն ազգին ձեռքով... Ձեր բարեպաշտօնք Պերճութեան Ձերում »։

շատ էր ճանապարհորդաց թիւն. յորոց մանաւանդ շատերը կը կենային հօն ամիսներով և ամբողջ տարիներով, և զանազան անգամ նորէն կը դառնային։ Եւ որովհետև կրօնասէր ժողովուրդ մ'էր և տարբեր լեզու և ծէս կը գործածէր, իրենց առաջին խնամքներէն մէկն եղաւ սեփական եկեղեցի ունենալ։ Եւ ինչ զարմանք որ այս պանդուխտները, (որոնք Իտալիոյ աւելի քիչ այցելած զանազան քաղաքաց մէջ քսանուհինգէն աւելի եկեղեցի և վանք հաստատած կամ ստացած էին, որ և նոյն իսկ Իտալիոյ հմտագունից անգամ անծանօթ մնացած է[1]), իրենց Ս. Մարկո-

[1] Ըստ իմ գիտութեանս այսպիսի քաղաքք են. Հռովմ, Ֆիրենցէ, Անգոնա, Ռիմինի, Բերուճիա, Օրվիէդոյ, Սալեռնոյ, Պոլոնիա, Ֆերրարա, Ճենովա, Բատուա, Ֆաղիոլի (Մանֆրետոնիա), Սիենա, Կուպպիոյ, Բարմա, Ֆաենցա, Բիզա, Ֆապրիանոյ, Նաբոլի, Բիսդոյեա, Կաւա, Լիվոռնոյ, ըստ կարգի առաջնութեան թուականաց որովք ճանչցուած են. մեծագոյն մասամբ ԺԳ դարուն կիսէն մինչև ցկէս ԺԴին. բաց 'ի Միլանէ, Բոմիայէ, Բոնդէ Գուրոնէէ, և այլն, յորս կը գտնուին Հայ Եղբարց անուամբ մենաստաններ, բայց ասոնք հայկական ուրիշ բան չունէին բայց եթէ իրենց առաջին հիմնադիրքը, որոնց յաջորդեցին Իտալացիք մինչև 1650 տարին, յորում Միաբանութիւնն վերցուեցաւ։ Հայոց բազմաթիւ եկեղեցիներէն և հիւրանոցներէն այսօրուան օրս կը մնան միայն

սայ ափանց վրայ հաստատուած նախնական ժամանակներէն 'ի վեր առանձին եկեղեցի մը հաստատած ըլլան նաև հօս, իրենց հնաւանդ լեզուով եկեղեցական պաշտամունք կատարելով։ Հայոց Սուրբ Խաչի ամենագեղեցիկ եկեղեցին, Ս. Մարկոսի հրապարակին և Մայր եկեղեցւոյն մօտ, յորում երկու դարէ 'ի վեր դեռ ևս հայ քահանայք եկեղեցական պաշտամունք կը կատարեն, ուրիշ նախընթաց փոքրագոյն եկեղեցւոյ մը տեղւոյն վրայ շինուած է. այս վերջինէս ալ առաջ կը գտնուէր

Հռովմայ, Վենետկոյ և Լիվոռնոյիներն. քանի մը տարի առաջ կար նաև յԱնգոնա։ Իտալիոյ այնչափ քաղաքաց մէջ Հայոց գալստեան ծագումն և ժամանակն, և իրենց փոքր գաղթականութեանց ընչուիլն, դեռ աղէկ յայտնուած չէ. և ինծի երևնալով որ աշխարհագրական և պատմական ուսմունքն, մանաւանդ իտալականն, եւ չի կենար անոնց պարագայքը քննելու, յարմար կը կարծէի, որ առանց գոհ ըլլալու այն քիչովը զոր իւրաքանչիւր քաղաքաց պատմագիրքն մեզ աւանդեցին, կարենար ըլլուիլ օգտիւ թէ քաղաքական և թէ տեղնական Դիւանաց մէջ՝ աւելի մանր խուզարկութիւն։

Եւ հօս հարևանցի յիշեմ հայկական գաղթականութեանց ուրիշ քանի մը կեդրոնատեղիներ, գէթ վաճառականական տուներ, յօտար աշխարհս և 'ի քաղաքս, ԺԶ-ԺԸ դարուց մէջ, գլխաւորապէս Մարսիլիա, Ամստերտամ և Գա-

հօն հնագոյն մատուռ մը, որ կը վերաբերէր նոյն ազգին Հիւրանոցին Հայոց Տուն կոչուած, որուն հիմնարկութիւնն եղած է ԺԳ դարուն առաջին կիսուն, Սեբաստիանոս Տօժին՝ Մարկոս Ծիանի որդւոյն առատաձեռնութեամբ ։ Այն ատենէն 'ի վեր մինչև ցայսօր տեղւոյն անունը կը կոչուի Հայոց փողոց, և մերձաւոր կամուրջն՝ զոր հիմակ Ֆէրայի կը կոչեն, մինչև ԺԵ դարուն մէջ Հայոց կամուրջ անունով կը յիշուի ։

Վաճառականութեան և Կրօնից իրարու հետ ունեցած դաշնակցութեան կապն ան-

անէ. յօգնութիւն կոչելով ուսումնականաց ազնուութիւնը, նմանօրինակ խուզարկութեանց վերաբերեալ Դիւանաց մէջ, մանաւանդ վերջին նշանակուած երկրին (Սպանիա). վասն զի քիչ ճանչուած են, և ուրիշ կողմանէ աւելի կարևորք, որչափ որ կը կարծուին փոխադարձ նուիրակութիւններ եղած ըլլալ Հայոց և հռչակաւոր Կարոլոսի Ե հետ. Հայ վաճառականներ տեսնուած են նաև ԺԶ դարուն վերջը Կրանադայի և Սիվիլիոյ մէջ, ինչպէս յետոյ աւելի յաճախ 'ի Պարչելլոնա և 'ի Գատիքէ, թերևս իրենց նախորդաց յարաբերութեանց շարունակողք ԺԴ և ԺԴ դարուց Կադալանացւոց հետ. նման անոնց որ Ֆլանտրիոյ, Պրուժի, Լոնտրայի, Գաղղիոյ Մոնբելլիէի և Շամբանեայի, Բուլեանց և Մեսսինայի հետ ունէին, որոնք ամենքն ալ յիշուած են Պալտուչչի Բեկոլոդդի փութաջան գործակալէն ։

ծանօթ բան մը չէ, որուն վրայ խօսիլ հարկ ըլլայ այս պարագայիս մէջ, ուր ուշադրութիւննիս կը գրաւէ մանաւանդ երրորդ դաշնակից մը, որ է Գիտութիւնն, և 'ի մասնաւորի Աշխարհագրականն, որ կերպով մը հիմն կրնայ համարուիլ Վաճառականութեան։ Ոչ սակաւ արդիւնք ունեցած է Վենետիկ նաև Հայոց մէջ գիտութեան զարգանալուն նկատմամբ։ Առաջին հայկական տպարանն հօս հաստատուեցաւ, և հայ տպագրութեան ճանչցուած ամենէն հնագոյն գիրքն (Սաղմոս մը), վերը յիշուած Հայոց տան մէջ հրատարակուեցաւ յամին 1565, Հերոնիմոս Բրիուլի Տօժին հրամանաւ, ինչպէս կը վկայէ այն Հայ Կուզդէմպէրկն ազնուական այրն Աբգար (Դպիր) Եւդոկիացի[1]։ Բնականապէս տպագրութեան անդրանիկ ծնունդն արժան էր 'ի պէտս կրօնից ընծայել. աշխարհագրական գիտութեանց մշակութեան հասնելու համար՝ ուրիշ ժամանակներ և

1 Վենետկեան Դիւանաց մէջ ոչ սակաւ խուզարկութիւններ ըրած ըլլալով, մինչև ցարդ չյաջողեցայ գտնել այս նիւթոյս վրայ գրուած մը կամ վճիռ մը։ Գալով յիշատակեալ գրքին, Ս. Ղազարու Մատենադարանն օրինակ մ'ունի. ուրիշ աւելի կատարեալ մը Միլանու Ամբրոսեանին մէջ կը պահուի, նոյն իսկ տպագրողէն պարգևեալ առ մեծափառն Պօրրոմէօս (Ս. Կարոլոս)։

ուրիշ միջոցներ պէտք էին. այլ և հանդերձ այսու զարմանալի բան է, որ եթէ ոչ տպագրութեամբ, այլ գէթ ձեռագրով հայերէն առաջին Նոր աշխարհագրական երկասիրութիւնն հրատարակեցաւ հօս 'ի Վենետիկ, և է Որդելիոսի Հանդիսարան աշխարհի անուանի գրուածն, թարգմանեալ յամին 1616 Անկիւրիացի Յովհ. Մկրտչէ, որ չեմ գիտեր ինչ պատճառաւ յիտալացւոց կոչուած է Մոլինոյ: Այս յիշեալ թարգմանս քանի մը տարի Վենետիկ կեցաւ, ուր հրատարակեց նաև քանի մը գիրք 1642ին և 1643ին, տպագրեալ Սալիգաղայի տպարանին մէջ: Այն Որդելեան երկասիրութեան օրինակ մը, որ հեղինակին ժամանակակից կը կարծուի, դեռ ևս անտիպ կը տեսնուի յերևան դրուած Հայկական Աշխարհահանդիսին մէջ:

Այս գիտութեանս վրայ, Հայկական և մանաւորապէս Վենետկահայկական ուսմանց նկատմամբ՝ այս ժամանակէս մինչև արդեան թուականի մը հասնելու համար, ներելի ըլլայ ինձի երկայն շրջան մ'ընել, կամ մանաւանդ սրաթռիչ վերանալու ամենահին դարուց մէջ, 'ի խնդիր հայկական Աշխարհագրութեան, և կամ ընդհանուր գաղափար մը տալու Հայկական Աշխարհագրութեան: Անոր համար յարմար կը համարիմ որ Կլիով ձեռք առած Կէայ՝ առաջնորդէր մեզի այն երկիրը՝ որ գրեթէ

կապ մ'է ընդ մէջ Մեծին և Փոքուն Ասիոյ, քիչ կամ՛ շատ հեռաւորութեամբ՝ չորս միջերկրեայ ծովերու մէջ, ընդ մէջ բովանդակ երկայնաշար շղթայից Կովկասեան լերանց և Միջագետաց և Ասորեստանի անսահման հոչակաւոր դաշտավայրաց, յաշխարհն Հայաստան. որ հանդերձ իրեն սառնաշունչ ձմեռներով և իր Նպատեան լերանց անուանի ձիւնահիւս պատմուճանով, հանդերձ իրեն ծառերու այժմեան աղքատութեամբն, — (տխուր հետևանք սակաւութեան խմաստուն ձեռնտուութեան մը առ արգասաբեր զօրութիւն բնութեան), — հանդերձ այսու ամենայնիւ է, և եղած է մանաւանդ աւելի հին ժամանակաց մէջ, հեշտալի գաւառ մը իրեն կանաչազարդ բարձրատափիցն համար. ուր հովիւն Արրահամու և Նոյի ժամանակաց նման, նաև այսօր կ'ապրի նոյն ոճով և նոյնպիսի սովորութեամբք. և ուր հիմակուան Պարսիկն իրեն Աքեմենեան նախնեաց նման, որոնք ընկերացան Մեծին և Կրսերոյն Կիւրոսի, իրեն աշխոյժ նժուգով, բազէն թևին վրայ, հետամուտ կը ըլլայ փասիանի, կաքաւի և այծեման ետևէն։ Ասոնցմէ շատ աւելի առաջ, Հայաստանի երէաշատ անտառք և ջրարբիք լաւ ծանօթ էին ինքնապետաց և զբօսասիրաց Բաբելոնի ու Նինուէի. ինչպէս նաև կարաւաններէ և գաղթականներէ յաճախեալ ճանապարհք, որ այն

լեռնային երկրէն և Կողքիսի հեռաւոր սահմաններէն՝ կը դիմէին այս երկու մեծապանծ մայրաքաղաքները։ Բևեռաձև գրութեանց նորածին գիտութիւնը այս բանիս բաւական հաստիք կ'ընծայէ, և մանաւանդ ամենէն աւելի Ս. Գրոց ազգագրութիւնն, և նոյն իսկ մշտաշարժ ալիք վսեմական և գոգցես սրբազան գետոցն առաջակողմն Ասիոյ՝ Եփրատայ և Տիգրիսի, այս նորաձև և բնական ճանապարհք, յորս նաւարկելու համար՝ հարկ է անհրաժեշտ ելլել մինչև Բարձր Հայոց ձորահովիտները։ Այս երկու գետերն, և նմանազոյգն Երասխ և Կուր, և Արարատեան լերինք՝ կրնան Հայաստանի աշխարհագրական առաջին արձանք յիշատակաց կոչուիլ, Ասիոյ անթիւ ժողովուրդներէ ճանչցուած։

Բայց քննելով նաև զգաստական մատենագիրս, առ որ կը դիմեն սովորաբար հմտագոյնք և ոչ դիւրահաւանք, կը գտնենք նախ քան զՔսենոփոն և քան զՀերոդոտոս իսկ, յունազգի ամենահին պատմագրաց պատառիկներուն մէջ, ոչ վեր 'ի վերոյ ծանօթութիւն մը մեր երկրին աշխարհագրութեան մասին և իր շահաբեր արդեանց նկատմամբ։ Արիստագոր Միլետոսի բռնաւորն, որ Քրիստոսէ 600 տարի առաջ կ'ապրէր, մետաղական տախտակներու վրայ նշանակուած կը ցուցնէր Լակեդեմոնիոյ կղէոմենէս արքային Հայաստանի խաշանց

և արջառոց ճոխութիւնը։ — Մարդիկեցին Քսանթոս, նոյնպէս հին քան զհռչակաւոր Ալիկառնասցին, Հայաստանի մէջ աղային լիճ մը կը յիշէ, որ անտարակոյս Վանայ լիճն է, ուր կը գտնուի միայն տառեխ ըսուած ձուկն, որուն անունէն հաւանօրէն մնած է յունարէնի մէջ տարիխոս (τάριχος) բառը, որ և խցէ աղած և չորցուցած ձուկն նշանակելով։ — Ապոլլոնիոս, ասոնց ժամանակակից, կը յիշատակէ Հայաստանի լերանց սառերու խաւերուն մէջ գոյացած կենդանական կամ ջրային նիւթերն, (որոնց քննութիւնը բնագիտաց կը թողում), զորս ինքն σκώληκας (որդնային) կը կոչէ, և Թէոփանոս δρίδας (լեռնային), որ ըստ իրենց վկայութեան՝ զով և անոյշ ըմպելիք կ'ընծայեն, որք և ցայսօր իսկ ընակչաց ծանօթ են, և կը համարուին Թափանցիկ որդեր, Որդնոյկ կոչուած 'ի Հայոց, և Ձիւղալ 'ի Տաճկաց։ — Տարակոյս չկայ, որ մեր աշխարհքն այս հին մատենագիրներէն աւելի աղէկ նկարագրեցին այն յունազգի աշխարհագիրք, որք յառաջ քան զՍտրաբոն՝ Գ և Բ դարուց մէջ կ'ապրէին նախ քան զՔրիստոս, և են Իսիդոր Քարագենացի, Ագաթարգիս, Ապողոդորոս Արտեմիացի, Իպպարքոս Նիկիացի, և այն մանրախոյզ քննիչներն, զորս Պտղոմեանց հովանաւորութեամբ առաքեց Աղեքսանդրեան ճեմարանն։ — Բայց Հայաստան

դեռ աւելի լաւ ծանօթացաւ և նկարագրեցաւ յաջորդ դարուն մէջ, երբ արծուիք և լեգէոնք Հռովմէականք անցան անդր քան զԵփրատ և զԵրասխ. Թէոփանէս՝ որ կ'ընկերէր Պոմպէի բանակին, Հայաստանի մասնաւոր նկարագրութիւն մ'ըրաւ, ինչպէս կը վկայէ իրեն աշակերտն Ստրաբոն, ամենէն աւելի ականաւոր աշխարհագիրն՝ ինչպէս ուրիշներու՝ այսպէս նաև մեր երկրին, թէպէտ և ոչ ստուգապատում քան զամենեսին. որ և ոչ սակաւ զարմանք կրնայ ընծայել մեզի, Պոնտացի՝ կամ մանաւանդ ըստ գիտնոց ոմանց՝ Հայազգի ըլլալովն. բայց պէտք ենք յիշել որ թէպէտ և ամեն աշխարհագիրներէ աւելի ընդարձակ երկիրներ պտըտած ըլլայ, ինչպէս կը պարծի, այլ մի և նոյն ժամանակ մեզի կը յայտնէ թէ այցելած չէր գրեթէ իր ծննդեան տեղւոյն սահմանակից Մեծին Հայոց աշխարհքը: Լաւ ծանօթ են բանասիրաց՝ իրեն զանազան իրաց վրայ ըրած գրութեանց մէջ գտնուած բազմաթիւ և ոչ մանրակրկիտ սխալներն: Հանդերձ այսու ամենայնիւ, ինքն է որ առաջին անգամ կը զանազանէ Հայ աշխարհին տոհմական բաժանմունքներն 'ի մեծամեծ գաւառս կամ Նահանգս, յորոց քանի չափ կը յիշէ յանուանէ: Թուի թէ շատ բան սորված ըլլայ իրեն ուրիշ վարժապետէ և հայրենակցէ մը, որ է երևելի քերականն և գրա-

պետն Տիրանիոս, բարեկամն Կիկերոնի, որ ինչպէս անուամբ՝ այսպէս և արեամբ Հայազգի կ'երևի ։ Զեմ գիտեր արդեօք Հայո՞ց թէ մանաւանդ Պարսից ազգին կը վերաբերին 'ի Հռուեննացւոյն յիշեալ Արշակ և Ափրոդիսիանոս[1] աշխարհագիրներն, որոնց և ոչ իսկ ապրած ժամանակը ծանօթ է ։ Ոչ սակաւ օգուտ քաղեց Ամասիացին (Ստրաբոն) նաև ուրիշ ժամանակակից մատենագրէ մը, որ է ինքնին Մետրոդորոս, որ զոհ եղաւ իրեն Հռովմայեցւոց դէմ՝ ունեցած անհաշտ ատելութեանը, որուն համար նախ բարեկամ եղաւ անոնց ահաւոր ախոյենին՝ Պոնտացւոյն Միհրդատայ, և յետոյ ասոր փեսային՝ մեր խրոխտ Տիգրանայ, որուն նաև պատմութիւնն կամ թերևս ներբողն յօրինեց քանի մը գիրք բաժնած, որք դժբաղդաբար իրեն ուրիշ աշխարհագրական գրուածոց հետ կորսուած են, որոնց համար արժանի եղեր էր Աշխարհագիր մականուն ստանալու ։

Ստրաբոնէն վերջը ամենածանօթ են, և զօրս աւելորդ իսկ կը համարիմ յիշել, մեր թուականին առաջին դարուն մէջ_ Երէցն Պլինիոս, որուն ծանօթ էին Հայաստանի 120 ընդարձակ նախարարութիւնները կամ նահանգները, յորոց ոմանք հին ատեն առանձինն վարչութիւն կամ թագաւորութիւն

[1] Գուցէ Հրահատ էր այդ ծռած անունն ։

ունէին․ բայց նա կ'արդարացընէ ինքզինքը անոնց անուանքը չյիշելուն համար, իբրու թէ հնչմունքն շատ խժալուր ըլլար հռովմայեցի ականջաց կամ գոռոզութեանն առջև[1]։ Այս տեղեկութիւններս քաղած էր յԱշփիտոնէ և 'ի Կեսար Կղաւդիոսէ։ Երկրորդ դարուն մէջ ամենէն աւելի կը փայլի հռչակաւորն Պտղոմէոս, որ բաց 'ի կըրկին Հայոց (Մեծ և Փոքր) մէջ յիշած երեսունէն աւելի Նահանգներէն, կը դնէ նաև ցանկ մը՝ յորում նշանակուած են 150էն աւելի քաղաքներ և աւաններ, սովորական աստեղաբաշխական դրութեամբ իւրաքանչիւրին դիրքը նշանակելով, յորոց մի մասն անծանօթ և տարակուսական է։ Բնականապէս իրմէն օգուտ կը քաղէր յաջորդ դարուն մէջ Սոլինոս։ Իսկ չորրորդ դարուն մէջ, թէպէտ և ընդ. աղօտ, կը հանդիպինք Աղեքսանդրացի Թուաբանի և բազմավիպի մը՝ Պապպոս անուամբ, Պապ կոչուած 'ի Հայոց, ժամանակակից նոյն ազգին առաջին պատմագրաց, որոնք նմանապէս յունարէն լեզուաւ կը մատենագրէին այն ատեն։ Մեզի՝ Հայոցս համար Պապի գործը ամենամեծ կարևորութիւն

1 « Կը բաժնուի (Հայաստան) 'ի Զօրավարութիւնս Στρατιγίαι, Præfecturæ, յորոց անունք և առանձին Թագաւորութիւնք, բարբարոս անուններով, 120 » ։ — Բնական Պատմութիւն, Զ. 10։

ունեցեր է. վասն զի իրեն համառօտութենէն (զոր Պտղոմէոսի գրքէն ըրած էր) մեր առաջին հայ աշխարհագիրն իրեն Աշխարհագրութեանը նիւթ քաղեց. այս վերջին գրուածիս հետաքրքիր եղողներն կրնան քննել Ս. Ղազարու տպարանէն 'ի լոյս ընծայեալ նոր տպագրութիւն մը՝ հանդերձ գաղղիական թարգմանութեամբ, որ գըրուած է հօս 'ի Հանդիսիս: Թարգմանիչն յառաջաբանին մէջ խնդրոյ տակ ձգած ըլլալով Գործոյն մատենագիրը, այսչափ միայն կ'ըսեմ ես, որ ըստ հասարակ կարծեաց՝ Մովսիսի Խորենացւոյ կ'ընծայուի այն, որ մեր մատենագրաց մէջ քան զամենն աւելի հռչակաւորն, և հինգերորդ դարուն ամենահմուտներէն մէկն է: Ինքը մասն մը յունէն թարգմանեց և մասն մ'ալ ուրիշ աղբիւրներէ աւելցուց, նշանակելով նաև իր հայրենեաց զանազան բաժանմունքներն, որ են Մեծին Հայոց 15 բաժիններն կամ աշխարհներն և 190 գաւաներն, և Փոքուն Հայոց երեք աշխարհներն, իւրաքանչիւրն իրենց յատուկ անուամբ, որոնց մեծ մասն նաև ցայսօր իսկ յազգայնոց պահուած են: Խորենացւոյն Աշխարհագրութիւնն, իրեն անուանի միւս երկասիրութենէն աւելի առաջ, որ է Հայոց Պատմութիւնն, հրատարակուեցաւ նախ տպագրեալ յԱմստերդամ, յամին 1668, և յետոյ զանազան անգամ 'ի Վենետիկ.

առաջին անգամ թարգմանուեցաւ լատի֊ներէն լեզուաւ յանգղիացի Վիսթոնեան եղբարց, Լոնտրայի մէջ, յամին 1736. և յետոյ ուրիշ լաւագոյն թարգմանութիւն մը 'ի գաղղիերէն հանդերձ պատկերօք և բազմաթիւ ծանօթութեամբք, հրատարա֊կեցաւ Բարիզու մէջ յամին 1818, հմուտ Յ. Սէն Մարդէնի ձեռքով։ Այս վերջնոյս սրամիտ քննութեանն առջև, այս երկա֊սիրութիւնն ոչ թէ Խորենացւոյն, այլ ու֊րիշ վերջին ժամանակի հեղինակի մը գործ թուեցաւ, վասն զի բնագրին մէջ կը գտնէր անուններ և տեղեկութիւններ, որ յետոյ էին ժամանակաւ մինչև այն ատեն հեղինակ համարուած անձէն։ Նոյն կար֊ծիքն ունի նաև մեր արդի հմուտ ազգայինն Պատկանեան, վարժապետ 'ի Համալսա֊րանին Պետերպուրկի, որ այս գրուածը ռուսերէն թարգմանեց հանդերձ բազմա֊թիւ ծանօթութեամբք, ընծայելով զայն ազգային երևելի թուաբանի կամ չափա֊գիտի մը Է. դարուն մէջ ապրած, Անանիայ Շիրակունւոյ։ Տարակոյս չկայ որ այս տե֊սակ գրուածոց մէջ դիւրաւ տեղի կ'ունե֊նան փոփոխութիւնք, յաւելուածք և խան֊գարմունք, ինչպէս կը տեսնուին նաև մեր նոր հրատարակածին մէջ բազմաթիւ ա֊ղաւաղմունք կամ փոփոխմունք, որք թեր֊ևս Է. դարուն մէջ եղած ըլլան, մասն մը, ըստ իմ կարծեացս, արաբական ար֊

շաւանքէն առաջ, որ գրեթէ 637–641 տարեաց մէջ կ'իյնայ. և առ այս հաւաստիք կը համարիմ՝ որովհետև ոչ անոնց արշաւանքին յիշատակութիւն կը գտնուի, և ոչ երկրին մայրաքաղաքին (Դուինի) առմանն, և մի միայն նոյն դարուն վերջին կիսուն մէջ, որուն անժխտելի վկայք են պատմուած դէպքերն: Սակայն ով որ ծանօթութիւն ունի հայկական մատենագրութեան յառաջատութեան և հայկաբանութեան վրայօք, կարելի չէ այնպիսույն այսպիսի գրուածի մը սկզբնագիրը՝ մեր գրականութեան ոսկեդէն կոչեցեալ Ե՞ դարէն վերջը կարգել: Կը համարիմ ուրեմն որ այս աշխարհագրութիւնն Մովսէսի Խորենացւոյ ըլլայ, բայց ձեռք խառնուած Է՞ դարուն մէջ. բայց թէ յորմէ՞ արդեօք՝ չեմ կրնար հաստատապէս հաւաստել. թերևս վերը յիշատակուած Շիրակացիէն ըլլայ, որովհետև կը գտնուին փոփոխութիւններ՝ որոնք կը վերաբերին իրեն հայրենեաց Շիրակայ և անոր սահմանակցաց իշխողներու. կրնայ նաև ընծայուիլ Մարուաղայի, որ Մետրապօլիտ էր Սիւնեաց աշխարհին, յորում իր իշխանութիւնը կը վարէր 630–50 տարեաց մէջ. և այս բանս կ'ըսեմ վասն զի քանի մը տարի առաջ ծանուցուեցաւ Էջմիածնի անուանի կաթողիկոսական աթոռոյն և վանաց վերաբերեալ հայկական ձեռագրաց ցանկի մը մէջ՝ Հայաստանի

աշխարհագրական նկարագրութեան մը գիտը, այս եպիսկոպոսի անունմբ, բայց անկից վերջը հրատարակուած ցուցակներուն մէջ աստր յիշատակութիւնն չի գտնուիր։ Կը յուսամ որ հնոյն Հայաստանի Աշխարհագրութեան այս մեր նոր հրատարակութիւնն, ախորժելի ըլլայ մեր աշխարհին, ինչպէս նաև ընդհանուր արևելեան աշխարհաց վրայ քննութիւն ընող գիտնոց. պիտի գտնեն վերջիններս այս տպագրութեան մէջ նոր լուսաբանութիւնք ամեհի Երասխայ ընթացից փոփոխման վրայ, ինչպէս նաև այն գետակաց՝ որ Տաւրոս լեռներէն Տիգրիսի մէջ կը թափին. որոնք թերևս նոր նշոյլ մ՚ արձակեն հռչակաւորն Տիգրանակերտի դրիցը վրայ, որ նաև վերջին ժամանակներս իսկ մեծամեծ քննութեանց նիւթ եղած է ոչ սակաւ համբաւաւոր հմտից։

Ընդ մէջ մեր և այս աշխարհագրական գործոյս երկասիրութեան անհուն ժամանակին, այսինքն տասներկու կամ տասնուչորս դարուց միջոց, Հայաստան ենթակայ եղաւ բազմաթիւ և ամենամեծ քաղաքական յեղափոխութեանց, եթէ՛ իր ներքին վարչութեան և եթէ իրեն քաղաքական բաժանմանցը մէջ. մէկ կողմէն Բիւզանդիոնի կայսերք, և միւս կողմանէ՝ Սասանեանք Պարսկաստանի Դ., Ե. և Զ. դարուց մէջ կամահաճոյ բաժանմունքներ ը-

րին, որուն օրինակ մը կրնանք տեսնել Ցուստինիանոսի հռչակաւոր Մնացորդաց (Օրինագրոց) մէջ։ Մեր աշխարհին տիրապետութեան մէջ ասոնց յաջորդող Արաբացիք, իրենցմէ շատ աւելի յարգեցին հին տեղագրական բաժանմանց կարգադրութիւնքը, որ և անխախուտ հաստատութեամբ միշտ պահուեցաւ նաև յազգայնոց, այնպէս որ Գ՚ դարէն սկսեալ մինչև ցԺԳ՚ դար՝ ամէն մեր պատմագիրքը, որք գրեթէ անընդհատ մէկմէկու կը յաջորդեն, իրենց հին Աշխարհագրին բաժանմունքներէն դուրս՝ ուրիշ բաժանմունք չեն ճանչնար Հայոց երկրին. որուն կը վկայէ նաև Պերփերուժէնն (Կոստանդիանոս Է) իրեն Վարչութիւն Կայսերական Արքունեաց գրուածոց մէջ. և ապա կը հաստատեն զայն Թ-ԺԲ՚ դարուն մէջ ձևացած ազգային թագաւորութիւնք և իշխանութիւնք։ Թէպէտ և այս դարերուս, ինչպէս նաև յաջորդաց մէջ, բազմաթիւ են եթէ ազգային և եթէ Բիւզանդական և Արաբական պատմագիրք, բայց աշխարհագիրք և մանաւորապէս մեր երկրին նկարագիրք միայն այս ետքիններուս՝ այսինքն Արաբացւոց մէջ կը գտնուին, որոնց ամենահարուստ մատենագրութեան բովքն դեռ ևս ըստ բաւականին ծանօթացած չէ։

Տասներորդ դարուն վերջերն ապրող մեր պատմագիրներէն մէկը միայն, Ուխ-

տանէս եպիսկոպոս Սեբաստիոյ, հայկական քաղաքական և կրօնական պատմութեան համառօտութիւն մը գրած ժամանակ, ինչպէս իր յառաջաբանէն կ՚իմացուի, միտք ունէր աւելցնելու իր երկասիրութեան երրորդ մասին մէջ տեղագրութիւն մը այն գաւառին՝ յորում կը բնակէին մասն մը իր հերձուածող համարեալ ազգայիններէն, որոնք ծայք կամ ծայդք կը կոչէին, նշանակելով յայնմ յանուանէ իրենց իւրաքանչիւր գեղերը, դղեակները և բնակութիւնները. դժբաղդաբար երկասիրութեան այս մասը ձեռքերնիս հասած չէ։ Իսկ այս նկարագրելիք գաւառը իրեն թեմական սահմանէն հեռու պիտի չըլլայ, այսինքն Փոքուն Ասիոյ մէջ Եփրատայ արևմտեան ափանցը վրայ։ Նմանօրինակ ձախորդ բաղդ մը գրկեց զմեզ թերևս Խորենացւոյն երկասիրութեան նման ուրիշ աշխարհագրական գըրուածէ մը, ԺԳ դարուն և ԺԴին սկիզբները ապրող հեղինակի մը, որ մեր մատենագրութեան ընտրելոց վերջինն է, Յովհաննէս Երզնկացի, քաղքէ մը՝ որ լաւ ծանօթ էր նաև Միջին դարուց մէջ իրեն անուանի պուքերամներովը [1]։ Այս երկասիրութեան

1 « Ուր կ՚ըլլուի աշխարհիս լաւագոյն պուքերամը », նաև ըստ Մարգոյ Բօլոյի։ Յայտնի է որ պուքերամը բամբակեայ կտաւ մ՚էր։

վրայ ձեռագրաց ցանկի մը մէջ պարզ յիշատակութենէ զատ՝ ուրիշ ծանօթութիւն չունինք։ Մեզի հետ ցուած ժամանակ՝ թող չզարմանայ ընթերցողն այս մեր ըրած կորուստներուն վրայ, որոնք անթիւ են. վասն զի մոլեռանդն հալածմունք և անքացատրելի չարասէր ատելութիւն մը, չէ դադրիր նաև այսօր իսկ այն թշուառ երկրին մէջ՝ բնաջինջ կործանելու որ և իցէ սրբազան յիշատակ կրօնից կամ գիտութեանց։

Ժամանակակից վերը յիշած հեղինակին, Նորոյն Հայաստանի, կ'ուզեմ ըսել Կիլիկիոյ մէջ, կը ծաղկէր իշխանազն մատենագիր մը, երևելին Հեթում, տէր Կոռիկոսի, եղբօրորդի իրեն համանուն հօրեղբօրն Ա. Հեթմոյ թագաւորին Հայոց, որ շատ լաւ ծանօթ էր Վենետկոյ Հասարակապետութեան՝ այս վերջնոյս վաճառականաց տուած Առանձնաշնորհութեամբք։ Ծաղիկ Արևելեան Պատմութեան կամ Պատմութիւն Թաթարաց երկասիրութեան այս իշխանազուն հեղինակն, ամենամտերիմ բարեկամութիւն ունէր Նշանաւոր Վենետկեցւոյն Մարինոյ Սանուդոյ Դորսելլոյի հետ, որուն նաև նոր խաչակրութեան մը կազմելու գաղափարին մասնակից էր։ Շատ հաւանական է որ վերաբերութիւն ունեցած ըլլայ նաև Մարգոյ Բողոյի հետ, որովհետև այս վերջինս եր-

կայն տեղն կեցաւ յՍիս, (այն ժամանակուան առաջին կարգի վաճառականական նաւահանգիստ Միջերկրականի վրայ), և յորքունիս Թագաւորին Հայոց. ուր կարելի է որ ինքն, ինչպէս նաև իր հայրն և հօրեղբայրն, լսած ըլլան նոյն իսկ Հեթում Թագաւորին և անոր երէց եղբօրն Սմբատ գունդստապլի՝ ըրած ուղևորութեանց պատմութիւնները, յորս մինեանց զկնի ձեռնարկեր էին 1248–1254 տարեաց մէջ, և յետինս հասուցած է մեզի գաղղիարէն գրած հետաքրքրական նամակ մը առ քեռայրն իւր՝ Թագաւորն Կիպրոսի. մինչդեռ իւր Թագապսակ եղբայրն համառօտ ծանօթութիւն և բերանացի երկար պատմութիւններ կը թողուր, զորոնք հաւաքեց փութաջան և եռանդուն խնամքով իւր երիտասարդ եղբօրորդին Հեթում. որ շատ ժամանակէն վերջը զայնս կարգի դրաւ, և իւր ինքնակամ մենակեցութեան մէջ, կ'ուզեմ ըսել 'ի Գաղղիա Բուագիէի Պրեմոնստրադեանց վանքին մէջ, գաղղիերէն կը թելադրէր զայն Ֆալգոնի անուանով անձի մը, Մարգոյ Բոլոյէն քիչ տարի ետքը, որ ակամայ բանտարգելութեան մէջ 'ի Ճենովա՝ թելադրած էր իւր Միլլիոնէ գրուածքը՝ Ռուստիչիանոյի։ Եթէ այս հռչակաւոր Վենետկեցին նախապատիւ է 'ի բարեյիշատակ չորս միջնադարեան ճանապարհորդաց, ես կ'առաջարկէի որ մեր

Հեթումը նախադասութիւն իրեն ձեռք տալու․ քիչ մը ետև թողլով բոլոր զուրիշները․ իւր Արևելեան Սատրապութիւնը, գրեալ՝ ինչպէս ըսի, սկզբնագիր գաղղիերէն, ետ-քը թարգմանեալ 'ի նոյն իսկ Ֆալքոնէ 'ի լատին լեզու, կրկին թարգմանուելով 'ի գաղղիերէն լեզու Ցովհաննէս Լը Լոնկ տ'Իփրեսի ձեռօք, մենք ալ նոյնպէս թարգմա-նեցինք 'ի լատինէ 'ի հայ, մինչև ցարդ Ձե-ռագրաց ցանկերուն մէջ յիշուած հայկա-կան սկզբնագիր օրինակ մը չգտնելով։ Հեթմոյ ուրիշ գրուած մը իրեն ընիկ լե-զուով գրած չունիմք․ բայց եթէ համառօտ ժամանակագրութիւն մը՝ գլխաւոր անցից Հայոց և դաշնակից ազգաց ԺԲ և ԺԳ դա-րուց մէջ հանդիպած, որոնց մէջ կը յիշա-տակէ վենետկեցւոց ընդ ճենովացիս ը-րած նաւամարտութիւնը վերայիշեալ Այա-սի ջրոց մէջ 1293ին, ինչպէս նաև նոյն երկուց հանրապետութեանց Կոս-տանդնուպոլսոյ մէջ 1296ին ըրած կռուին դէպքը։

Բազումք՝ մանաւանդ թէ բազմագոյնք 'ի Հայոց, յաճախեցին այն երկայն ճամ-բան, սկսեալ յափանց Միջերկրականին, Եփրատայ և Երասխայ՝ մինչև 'ի Բէյ-Հոյի ափունքը, թէ՛ քաղաքական գործոց համար և թէ վաճառականութեան պատճառաւ․ և թերևս նոյն յաճախութեանցն այն հե-տաւորագոյն երկիրները՝ իրենց ծանօթա-

նալով, չունեցան նաև փափագ անոնց նկարագիրն ընելու. և արդարև չունիմք բաց 'ի վերոյ ասացեալ Հեթմոյ գործէն՝ ուրիշ մը, բայց եթէ ցամաք յօդուած մը Կիրակոս պատմչին մէջ, Հեթմոյ Ա. ճանապարհորդութեան վրայ, որ իրեն ժամանակակից էր, և սակայն կարևոր և ուշադրութեան արժանի. զոր և այնպէս համարեցան՝ բայց յայլոց՝ Քլաբրոթ, Խաչակրաց Պատմչաց շարքը հաւաքող Գաղղիացիք, և վերջերս հմտուն գրագէտն Շտուդկարտի Պ. Հայտ, իւր Միջին դարու առևտրեան Վաճառականութեան սքանչելի Պատմութեան մէջ։

Մեզի համար արժանայարգ է նաև գրեթէ ժամանակակից զգուշաւոր պատմիչն Սիւնեաց աշխարհին Ստեփաննոս Օրբելեան մետրապօլիտ, որ կը կնքէր իւր Հայրենեաց և Թեմին Պատմութիւնը յարելով 680 գիւղօրէից անունները, որք տասնուերկու գաւառներու մէջ ցրուած են, անոնք միայն որ եպիսկոպոսական աթոռոյն տասանորդ կու տային։ Եւ այս՝ Մեծին Հայոց 15 Նահանգաց մէկուն՝ միակ ճոխ ցուցակն է որ մեզի հասած է. և թերևս այս ալ չորսին մէկն է ամբողջ այն գաւառին (Սիւնեաց). վասն զի ըստ մեր նոյն Պատմըչին, ԺԲ. դարուն՝ որ է ժամանակ անկման, ազգային Թագաւորի մը ստացած երկրին կէսը կը պարունակէր աւելի քան

զ1400 գիւղս, 43 բերդս, և 48 գլխաւոր մենաստանս։

Իբրև մասնաւոր աշխարհագրութեան գրող ԺԴ դարուն մէջ կը յիշուի Վարդան մը. համառօտ ծանօթութիւններ կու տայ օտար տէրութեանց վրայ, և աւելի ընդարձակօրէն կը խօսի իւր հայրենեաց Հայաստանի վրայ, ուր արդէն Արաբաց, Սկիւթացւոց և Թաթարաց և այլ ազգաց ուժգին հեղեղաց արշաւանքներն հանդիպեր էին, և կորսնցուցեր էր ոչ սակաւ իւր հին անուանակոչութիւնները. անանկ որ լաւ համարեցաւ մատենագիրս բաղդատել հին ատենուան անուններն իրեն ժամանակակիցներուն հետ։ Եւրոպայի համառօտ ակնարկութեանը մէջ, կը զարմանայ Վարդան Բարիզու վրայ՝ Դպրոց վարդապետաց, և կը վերջացընէ իւր գործը ըսելով. «Վենետիկ որ նստի 'ի ծովու, ուր քիմիարարն (կամ քիմիագէտն) բանի, և ներկանէ զարծաթն յոսկի[1] »։

Բայց աւելի ուրիշ տեսակ աշխատութիւն մը որ կրնայ կոչուիլ արծաթոյ և ոս-

[1] Վարդանայ Աշխարհագրութիւնն վերոյիշեալ Սէն-Մարգէնէն Թարգմանուեցաւ 'ի գաղղիերէն և հրատարակուեցաւ Խորենացւոյն Աշխարհագրութեան հետ, իրեն պատուական գործոյն մէջ, Mémoire historiques et géographiques sur l'Arménie, Բարիզ, 1818, Հա. Բ, էջ 406-471։

կւոյ, սիրելի է ինձ ցուցընել այս ժամանակուան մէջ (Դար ԺԳ և ԺԴ) կատարուած, կամ մանաւանդ մեծագին կամուրջ մը ձըրգուած, մասնաւորապէս Իտալացի և Հայկազն վաճառականներէն, այն Այասի նաւահանգստին և պարսկական մայրաքաղաքին՝ Դավրիժու միջոց, ուղիղ գծով մը կըտրելով բոլոր Հայաստանի երկայնութիւնը, և անկէ ալ դէպ 'ի Հնդիկս և 'ի Չինաց աշխարհ ճամբան շարունակելով։ Քանի՜ միլիոնաւոր վաճառք անցան գնացին և իրարու հետ փոխանակեցան այս վաճառաշահութեան գծին վրայ։ Թերևս դժուար չըլլայ զանոնք մեզ երևակայելու. բայց պատմական աշխարհագրին դեռ ևս փափագը կատարելապէս չի լեցուիր՝ ճանչնալու այն վերոյիշեալ երկու քաղաքաց մէջ եղած ճամբուն 33 կայարանքը, որոնք միայն անուամբ յիշատակուած են Փլորենտացի Բեկոլոդդիէն, իւր մեծայարգ գրքին մէջ որ կոչուի Գործառական Վաճառականութիւն։ Թէ որ յաւելցուցած ըլլար աշխարհացոյց մը և կամ գոնեայ իւրաքանչիւր հանգրուանաց մէկմէկէ հեռաւորութիւնները նշանած ըլլար, տեսակ մը Պեւտինկերեան ուղեցոյց տախտակ մը կ'ունենայինք։ Բազումք ետևէ եղան ճշդելու այն վաճառականական կարաւանին հանգրուանաց անունները՝ որոնք նաև շատ տեղ թերի են յուղղագրութենէ, և ամենէն աւելի ա-

ղէկ վերոյիշեալ Հայտը. գրողս կը կարծէ որ ճշդած ըլլայ այն հանգրուաններէն մէկ քանի հատն ալ, բայց տակաւին ոչ սակաւ տարակոյսներ կը մնան անոնց վըրայ, թերեւս նաև անկերպարան եղած և մասամբ ալ կործանած սարսափելի Լէնկթիմուր թաթարին՝ Ասիոյ նոր աշխարհակալին՝ վայրենի խուժաններէն. որուն պատճառաւ կրնայ ըսուիլ թէ այլայլեցաւ ոչ սակաւ համաշխարհական տնտեսութիւնը. ուստի պէտք եղաւ վաճառականութեան նորանոր գծեր և նորանոր դռներ փնտռել երկրիս երեսը։ Ի վերայ այսր ամենայնի՝ հին հետքերը չէին ջնջուած բոլորովին. և նոյն միջոցին որ այն տմարդի բռնաւորին բանակը զառանք կը կոխկռտէին, կը գտնենք Կլավիխոյ մը և Շիլդպերկեր մը որ նոյն թագաւորին Ասքունիքը կ'ընթանան, և ոչ սակաւ լոյս կը սփռեն իրենց անցած երկիրներուն վրայ, որոնց մէջ կայ նաև մեր Հայրենիքն։ Այս բաղդաւոր և բռնադատեալ գերմանացի ճանապարհորդէն հազիւ կէս դար մը վերջը, կը տեսնենք որ նորէն նոյն ճամբան բռնեցին խումբ մը ընտիր իտալացի ճանապարհորդք, մեծաւ մասամբ Վենետիկեցիք, որ Հայոց երկրէն կ'անցնին՝ երթալու յորբունիս միապետաց նորանոր հարստութեանց Պարսկաստանի. որք են Ծենոյ Կադերինոյ, Յոսափատ Պարպարոյ, Կոնդարինի Ամբրոսիոս, և Անճեռոն

վաճառականն վենետկեցի, որոնց ուղեւորական պատմութիւնը խնամով հաւաքելով հրատարակեց անոնց հայրենակից բարեյիշատակին Ռամուզիոյ։

Բայց ո՞վ կրնայ կարծել, որ մինչդեռ ասոնք և ուրիշ ուղեւորք Հայաստանի արեւելեան կողմը կը դիմէին, մի և նոյն ժամանակ արեւմտից կողմանէ ճամբայ կ'ընէր անոնց հայրենակից մէկը, թերեւս իտալական սրտագոյն և ճոխագոյն հանճարն. կը քննէր այն օրերուն մէջ հանդիպած դըժբաղդութիւնները, հրաբխային բնութիւններէ պատճառեալ ցած երկիրներու ողողմունքները, կը զննէր կործանած քաղաքներ, սառնամանեաց կարկառից և փլատակաց տակ ջախջախած մարդիկ. կը լսէր գետնի ահաւոր թնդիւնը, Ետնայինէն և Սգրոմպոլիէն աւելի ուժգին և որոտընդոստ, և նոյն իսկ զայրագին ծովէն, ինչպէս նոյն ինքը կը բացատրէ. և աներկիւղ կարգէ դուրս կատաղեալ բնութեան դիզադէզ այս ամեն արհաւիրքէն, կը համարձակէր դեռ եւս անվախ ներս մանել ահեղաձայն քարանձաւին նեղ ճեղքուածին մէջ, և միջամուխ ըլլալով թաւալագլոր մինչեւ 'ի խորս կ'իջնէր յատակին, գետնին գաղտնիքը հետազօտելու համար. ինքն իսկ խորհրդազգած անձն, զոնէ այս կէտին։ Ո՞վ կը կարծէ որ այն անձն ուրիշ մարդ չըլլայ՝ բայց եթէ ապառնի գե-

րազանց նկարիչն Վերջին ընթրեաց։ Ցուսալի է որ մասնական և մանրագնին քննութիւն մ'ըլլուելով Ատոլանդեան բռուած ձեռագրին վրայ, որ կը պահուի Միլանոյ Ամբրոսեան գրատունը, քիչ մը այս գաղտնիքը դուրս հանէ, յայտնելով մեզի թէ երբ և ինչպէս այս ամենաքննելի այցելութիւնը ըրած է անմահանունն Լեոնարտոյ տա Վինչի յափունս Եփրատայ՝ Տաւրոս և Անտիտաւրոս լերանց մէջ, և յափունս Կիլիկիոյ, զոր ինքն անխտիր կերպով կ'անուանէ Արևմտեան Հայաստան[1]։

Այս երևելի ճանապարհորդներէն ետքը յաջորդած դարուն մէջ սակաւաթիւք կը տեսնուին, ապահովապէս՝ տաճկական և պարսկական պատերազմաց ալեկայոյզ ժամանակաց համար, որոնցմով 'ի ծուէնս բաժանեցաւ մեր արդէն ամայացեալ աշխարհն. սակայն այց ելան այս թուականներս, և խիստ քիչ գրուած մեզի աւանդեցին. մեր աչքն այս քիչերուն մէջ կը տեսնեն Ճէնքինսըն, Նիուպըրի, Գարդուըրրայդ և Շէրլէյ անգղիացիք, կարապետք իրենց անթիւ համազգեաց, որ մեր օրերը կը յաճախեն յԱսիա ինչպէս յԵւրոպա։ Յաջորդ ԺԷ դարն կրնայ համարուիլ իբր գաղղիացի՝ նկատմամբ այցելուաց Հայաստանի,

1 Տես զանգղիական օրագիրն The Academy, Թ. 462, (12 մարտ 1881)։

թէ քարտզիչք ըլլան և թէ վաճառականք. բայց ընդհանրապէս վերջին երեք դարերուն մէջ այնպէս բազմաթիւ են Հայաստանի և շրջակայ երկիրներուն վրայ գրող մատենագիրներն, որ եթէ հարկ ըլլար և ձանձրութիւն չպատճառեր՝ կրնայի 200էն աւելի մատենագրաց անուն համրել և աւելի ևս թուով մը անոնց վերաբերեալ գրուածները. գործք՝ որ այսօրուան օրս կրնայ ըսուիլ թէ կը վխտան զանազան կերպերով, ոչ միշտ հաւասար տեսութեամբ և արժէքով. Թէպէտ և շատերուն մէջ որ խօսեցան Հայաստանի վրայ նաև աչաց տեսութեամբ, չեն կրնար բայց եթէ քիչերը ունենալ այն արժէքն և ծանօթութիւնն, ինչպէս են Դուռնըֆոր, Շարտէն, Բարրոդ, Քէր-Բորդըր, Էլի Սմիթ, Տիւպուա տը Մոնթփէրէօ, Կ. Քոխ, Վակնէր Մորից, Դիւ-սիէ, Տէյրոլ, Յ. Պրայս. և Նըրռամիտ անխոնջ քննաքաններէ ոմանք, ինչպէս են կրկին Սէն Մարդէնք, արեւելագէտն՝ որուն վրայ երկար խօսեցանք, և հռչակեալն Վիվիէն, որ այժմ իսկ կը պատկէ իւր երկայն և մեծագին աշխատութիւնքը մեծ Աշխարհագրական Բառարանով և Ատլասով. աշխարհագրապետն Ռիդդէր, և իւր արժանաւոր յաջորդն Հ. Քիբերդ. Այցելուք Հայավէննետկեան մասին 'ի յաշխարհահանդէսխս կրնան նշմարել հարիւրէն աւելի այս ճանապարհորդաց և մատենագրաց գոր-

ծերը, և անոնց քովը ազգային մատենա-գրաց գործեր ալ, որ թէ և բազմաթիւ չեն, բայց յիրաւի ստուգագոյն են իրենց տուած տեղեկութեանցը մէջ իրենց Հայրենի երկրին այլ և այլ գաւառաց։

Վերոյիշեալ Վարդանէն ետքը, մանաւորապէս նկատմամբ աշխարհագրական ուսմանց՝ մեր դպրութիւնն աղմկալից յաջորդ ժամանակաց մէջ յուզելով՝ մեզ միայն քիչ կարևոր և փոքր գործեր թողեր է։ Եւ սակայն յիշատակաց արժանի են քանի մ'ամենափափաքելի գործեր, կորուսեալ և կամ ցարդ ծածկեալ. ինչպէս է այն ընդհանուր աշխարհացոյց տախտակըն և բոլոր տեղեաց և վանորէից Հայոց ստորագրութիւնն, զոր մեր կաթողիկոսներէն մէկը յօրինել տուաւ, և 1562ին յղեց առ գերագոյն քահանայապետն Պիոս Դ, ձեռամբ նախագովեալ մեր նախատպագրող Աբգարին[1]։ Մեր յառաջագոյն յիշեալ Անկիւրացւոյն ժամանակակից, որ է ըսել 'ի սկիզբն ԺԷ դարու, նշանաւոր անձ մ'ալ՝ Գրիգոր պատրիարք Կ. Պօլսի, բաց

1 «Նոյն Աբգար նուիրակներնուս. (և այլն, կը գրէր Կաթողիկոսն առ Պապն) տուինք, որ ձեր Սրբութեանը մատուցանէ... ցուցակ մը ամենայն տեղեաց, և մենաստանաց բոլոր ժողովրդոց Հայոց ազգին»։ Ալիշան, Տարեգիրք. յամի 1564, Թ. 31։

յայլ գրուածոց՝ ուսումնական աշխարհագրութեան գիրք մ'ալ Թարգմաններ էր յարար լեզուէ, և ինքնին շիններ էր առաջին անգամ՝ մեր մէջ յիշեալ Երկնագունտ մը Հայերէն անուամբք գրեալ[1] ։ Իսկ Նոր յիշեալ Աքգորու գործոյն նման աշխատութեան մը ձեռք կը զարնէր, 130 տարի ետքը, Հայրենասէր անձ մը՝ Երեմիա Չէլէպի մականուամբ Քէօմիւրճեան, երիցագոյն եղբայր Երանելի Տէր Կոմիտասայ խոստովանողի, որ մարտիրոսացաւ 'ի Կ. Պօլիս յամին 1707 ։ Այս աշխարհացոյց տախտակը շինուեցաւ 'ի խնդրոյ Գերմանիոյ կայսերական Դեսպանին որ 'ի Կոստանդնուպօլիս, որ և առելցընել տուաւ Հայկականին հետ եւրոպական լեզուով Հայաստանի տեղեաց և վանորէից անունները ։ Անտարակոյս արդիւնաւոր և օգտակար ծառայութիւն մ'ըրած կ'ըլլայ, թէ որ ճարտար անձ մը Վիէննայի կայսերական դիւաններուն մէջ փնտռելու փորձ փորձէ, և կամ նոյն իսկ այն դեսպանին ազգատոհմին քովը, որուն ոչ

[1] Իւր վարուց յիշատակագիրն, որ և իր եղբօրորդին է, կ'ըսէ. «Ցեղեակ (Տէր Գրիգոր) արտաքնոցն հանճարոյ, և ևս աստղաբաշխն և երկրաչափականին, ըն և անթերի ։ ... Այլ և Թարգմանեաց գիրք մի բնաշխարհի՝ օտարալ լեզուէ 'ի մեր բարբառ. այլ և գունդ մի 'ի մեր գիր և լեզուաւ, երկնից հանդերձ տատեղագիրք չարժիլարեալ» ։

անունը և ոչ Թուականը գտեր եմ, նա մա-նաւանդ և ոչ այլ ուրիշ նշան մը նոյն գոր-ծոյն, եթէ ոչ՝ զի հեղինակն շատ աշխատան-քով փաստակեր էր անոր վրայ, մասամբ մը այն իրմէ նշանակուած տեղւոյց ինքնին անձամբ այցելու եղած ըլլալով, և մասամբ մ'ալ տեղացւոց և տեղերուն գիրքերը ա-ղէկ ճանչցողաց արժանահաւատ վկայու-թեամբը ստուգած ըլլալով։

Մինչդեռ Երեմիա 'ի Կոստանդնուպոլիս Հայաստանի քաղաքական սրբազան աշ-խարհացուցին կը պարապէր, հայ եպիս-կոպոս մը բնիկ ծննդեամբ 'ի Նուիրական ափանց Երասխայ, Գողթն գաւառէն՝ հռչ-չակաւոր իրեն հին վիպասանից և իրեն գինեւէտ այգեստանեաց համար, ինքն ալ բանաստեղծ, Թովմաս անունով, Հոլան-տայի մայրաքաղաքը փոխադրուելով իւր քեռւոյ որդւոյն (Մատթէոս) և (Ղուկաս) եղ-բօրորդւոյն հետ, յետ բազում աշխատու-թեանց և ծախուց, 1695ին կը հրատարա-կէր չքնաղ և մեծ Համատարած տախտակ մը, պողպատի վրայ փորուած, Շոնեպէք յաջողակ արուեստագէտ եղբարց ձեռ-քով, ինչպէս որ կը ցուցնէ փորուած լա-տին արձանագրութիւնն. « Hadrianus et Petrus Damianus Schoonebeek fratres faciebant Amstelodami, MDCXCV. »։ Արժանի է ակնարկել մէյմը այն աշխարհացոյց տախ-տակին՝ որ յԱշխարհահանդիսիս դրուած

է, և առաջինն է 'ի կարգի հրատարակեալ Հաւաքման հայկական աշխարհացուցից, կատարելութիւնը դասելու համար, և զարմանալու յաւելեալ մասանց ճոխութեանը. ինչպէս են կենդանակամարին նշաններուն և եղանակաց այլաբանական պատկերաց շարքն: Ասոնք ներկայացեալ են չորս խմբով համատարածին երկու կիսագնտոց չորս անկեանց մէջ, և ամեն մէկ պատկերին ներքևը իւրաքանչիւրին անունը նշանած. պատկերաց խումբերն այսպէս գետեղած են. Զգարունն կը ներկայացընեն՝ Փայետոն, Փեբոս, Պիւրրա, Արուսեակ և Արէս մոլորակ. զԱմառը կը ներկայացընէ Լուսաբերն Աստղիկ, Իռիս, Հերա, Անահիտ, Գիշերավար, Կռոնոս, Հերմէս. Աշնան կը վերաբերին Պան, Պոմոնա, Դեմետր, Կիւբէլէ, Քլորիս. Ձմեռան՝ Եւոլոս, Վուէաս, Պոսիդոն, Թետիս: Փոքր երկնագունտ մը կը ցուցընէ զհամաստեղութիւնս: Հեղինակն, և կամ թէ ըսենք, գործոյն կատարողն Թովմաս եպիսկոպոս՝ արտայայտեց և տպել տուաւ հայերէն ոտանաւոր յիշատակարան մը նոյն տախտակին ներքևը, այսպէս.

« Նորոգ քանդակ գեղեցկավէտ հանրանշան
Փոխաբերեաց Թոմա յետնորդ սատ վանանդեանս
Փորագրութիւն յոյժ ցանկալի,
Ի ձեռն եղբարց հարազատի,
Աղբերանու Տիկոնբէկի,

Ես Պետրոսի քաջավարժի,
Ընդ Ղուկասու հմտագունի.
Երկամեք բազմօք յոյժածօք
Եղբօրորդի իմ անդրանկի.
Պահեսցէ էն յիւրում ծոցի։
յԱմստէրտամ, 1695 »։

Այս տառանաւորիս գլուխը պարսիկերէն գրուած է Ճիհան-պէյան (جيهان بيان), որ է ծանօթութիւն աշխարհի կամ Տիեզերագիտութիւն[1]։ Վերոյիշեալ հեղինակք հրատարակած էին նաև փոքր գրքոյկ մը մեկնական, անուանելով զայն Բանալի Համատարածի, 1690էն 'ի վեր տպագրեալ, որ նշան է թէ Աշխարհացուցին փորագրութիւնն ալ քանի մը տարուան մէջ եղած է։ Այս է փորագրեալ առաջին հայկական աշխարհագրական տախտակն մեզի ծանօթ, և թերևս ամենէն գեղեցկագոյնն կամ չքեղագոյնն։

Որովհետև յիշեցինք՝ թէպէտ և անուղղակի՝ օտար փորագրողներ, արդար թուի ինձ չմոռնալ Հաճի-Գալֆա տաճիկ անուանի աշխարհագրին տաճկական Տախտակաց հայ քաջ փորագրողը, որք 1728ին հրատարակուեցան 'ի Կոստանդնուպոլիս. մեր Հայուն անունը կը յիշէ Դոտէրինի իւր

1 Այս համառօտած Աշխարհացուցիս պղնձէ տախտակաց ումն կտորները կը պահուին Ս. Ղազարու Մխիթարեանց քով։

Տաճկական նաւակաց մէջ. և կ'ըսէ թէ ինքն ունի իւր ուսումնոցին մէջ «Մակարդակ կիսագնտի մը Տախտակը քանդակ փորուած 'ի Ղալաթիացի Մկրտչէ [1] »։

Ի Հանդիսի գրուած աշխարհագրական Տախտակաց հաւաքմանցը մէջ յետ Ամստերտամին կու գան Վենետկոյ Մխիթարեանց շինել տուածները. որոնց մէջ է Հինն Պաղեստին (Թ. 6), գործագրեալ 1746ին իրենց անմահական Հիմնադրին Մխիթարայ ձանիւքը. ուրիշ մ'ալ (Թ. 7) ամբողջ Հայաստանի, նոյնպէս իրմէ պատրաստուած, և հրատարակեալ իրեն մահուընէն երկու տարի ետքը։ Աշխարհացուցից շարքին մէջ անոնցմէ առաջ գրուած են (Թիւ 2-5) Չորից մասանց աշխարհի տախտակները, որ շինուեցան 1786-7ին, Վանանդեցիին Աշխարհացուցին ախորժակին հետևելով՝ զարդարուած են փորագիր գեղեցկագոյն խորհրդաւոր նշաններով։ Համատարածը (Թ. 8) որ զանոնք կը լրացընէ, անոնցմէ երեք տարի առաջ շինուած է (1784)։ Զանց կ'ընեմ՝ ակնարկելու Հաւաքածոյին մէջ ամեն եղածը, որ ամենը մէկէն երեսունի չափ մեծ և մանր աշխարհացոյցք կը պարունակէ. ուստի միայն կը յիշա-

1 La carta di un piano emisfero da *Mighirdis* di Galata *finamente* intagliato. Հա. Գ., էջ 116-7։

տակեմ 10 տախտակաց Մեծ Ատլասը, մասամբ 'ի Բարիզ շինուած մասամբ մ'ալ հօս 'ի Վեննետիկ, 1849ին, և փոքր Ատլասը՝ որ կը բաղկանայ 12 տախտակներէ, նոյնպէս 'ի Ս. Ղազար շինուած յաջորդ տարին (1850)։ Ի Հարց Մխիթարեանց Վեննայի շինուած՝ հրատարակուեցաւ ուրիշ Ատլաս մը հաւասար մեծութեամբ և 21 տախտակով 1857ին. ասոնք միանգամայն բայց յերկու ազգաց Գաւառներէ, տուին մեզի նաև գեղեցիկ Երկրագունտ մը երկու ոտնաչափ տրամագծով։

Պէտք չէ լռել հօս նաև կէս-երկնային նոր արուեստէն հանած օգտակարութիւնքը, որ հրաշալի կերպով լուսով կը նկարէ ոչ միայն մարդկանց դէմքը, այլ նաև բնութեան ուրիշ գեղեցկութիւնքը և ճարտարապետին գործերը։ Լուսանկարչութիւնն թէ որ այնչափ երկիրներու համար աշխարհագրութեան մեծ օգնական եղաւ, մեր աշխարհին համար կրնանք ըսել նախախնամական. վասն զի ասով, թէ որ կրնայ զուրցուիլ, կը փրկուին և կը պահուին թղթի վրայ իր հին յիշատակարանքըն, որք յանփութութենէ օրէ օր կորուսանելու վրայ են իրնց իսկատիպ կերպարանքը, և նոյն իսկ գոյութիւննին։ Հօս դրուած Մեծ Տետրակ մը, կըցուցընէ բայց յուրուագիծներէ և տպագիրներէ՝ Հայաստանի շատ մը լուսանկար պատկերներ, որ

մասամբ Ռուս արուեստագիտի (Երմաքոֆ) մը գործն է, և մաս մ'ալ ազգային արուեստագիտաց. որոնց մէջ նշանաւորաց մէկն է Տփխիսաբնակ Ցովհ. Քիւրքճեան, որ անբաւ զոհողութեամբք և վաստակօք հարիւրաւոր պատկերներ լուսանկարեց մեր անուանի Աղիտաւոր քաղաքին Անւոյ, որ Ժ դարուն մեր Բագրատունի Թագաւորաց մայրաքաղաքն էր. և անոնցմէ մեծ մաս մը հայելադիտակի յարմարցուած են, ինչպէս որ Աշխարհահանդիսիս մէջ դրուած 50 հատի չափ կը տեսնուին։

Մտածելով արդ որ այս տախտակաց, աշխարհացուցից, լուսանկարաց և աշխարհագրական գիտութեան վերաբերեալ գրոց որ և իցէ Հաւաքմունքն, արդարև կը պարունակէ հայկական գործոց մեծագոյն մասը՝ այլ ոչ բովանդակը, այս տեսակին մէջ, վերջի մէկուկէս դարու միջոցին մէջ, որ յաջորդեց նմանօրինակ վշտալի ուրիշ նախընթաց մէկուկէս դարու մը, մեր հայրենական երկրին վրայ տաճկական և պարսկական բանակաց խիստ շատ անգամ իրարու հետ բախմամբը, և վերջերս՝ այս դարուս մէջ Ռուսական գնդից խաղացմունքը (որ չորս կամ հինգ արագ պատերազմներով առին յառաջնոցն ոչ սակաւ մասն). — մտածելով նաև գրեթէ անընդհատ եղած աւերմունքները յանսանձ և գերփող ցեղերէ, յոյս ունիմ՝ որ կարեկ-

ցութեան արժանի ըլլայ Հայ ազգն, թէ որ յաջողած չէ այնչափ անդուլ տառապանաց մէջ աւելի եւ մշակելու աշխարհագրական ուսմունքը, մանաւանդ իւր հայրենեացը. որ երբեմն ունէր հաւանօրէն արդի բազմամարդ Իտալիայէն աւելի գիւղօրայս, յորոց հիմա հազիւ թէ մեզի կը հասնին 3000 յատուկ ազգային անուններ, ՚ի բաց թողլով օտարաձայն անունները. բայց խժդժութիւնն եւ բարբարոսութիւնն որ վեց դարէն աւելի եղաւ եւ դեռ եւս կայ, օրէ օր կործանելով իւր պատուական յիշատակարաններէն մէկը, եւ անհետացընելով ամ յամէ այն նուիրական եւ սիրելի հայրենական անուններէն մէկը, կը վախցընէ զմեզ, (թէ որ իրականապէս չփոխուի այս կերպով երկրի մը վարչութիւնս, որ ինչ որ ալ ըլլայ՝ չուրանայ պիտի երբեք իւր նախնական ազնուականութիւնը, եւ ոչ պիտի մոռնայ իրեն արդիւնքը՝ ինչ ալ որ եղած ըլլայ), շատ չէրթար որ փոխանակ Հայկական աշխարհագրութեան, Աւերագրութիւն մը պէտք ըլլայ։

Հ. ՂԵՒՈՆԴ Մ. ԱԼԻՇԱՆ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

### ՏՊԱԳՐԵԱԼՔ Ի ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ

### Ելեալք 'ի Հանդիսին Վենետկոյ.

1. *Ագոնց (Գերապայ. Ս.) — Ընդարձակ աշխարհագրութիւն*, **1802-1816**։

2. *Ալիշան (Հ. Ղ. Մ.) — Աշխարհացոյց ատլաս, ընդարձակ նախաշաւիղով Ուսումնական, բնական և քաղաքական աշխարհագրութեան — Փորագրեալք 'ի Բարիզ, յորում կը պարունակին հետևեալ տախտակներն*։

*Համառօտ յերկուս կիսագունդս — Արևային դրութիւն — Ասիա — Օսմանեան Պետութիւն — Հայաստան — Եւրոպա — Ափրիկէ. — Ամերիկա Հարաւային — Ամերիկա Հիւսիսային — Ովկիանիա*։

3. — *Բնագիտութիւն Հայաստանի. (գաղղիերէն)*, **1870**։

4. — *Նշմարք և նշխարք Հայաստանի, եռալեզուեան (հայ. - գաղղ. - անգղ.) եռահատոր պատկերազարդ*, **1872**։

5. — *Շիրակ. Նոր հրատարակութիւն պատկերազարդ*, **1881**։

6. — *Քաղաքական աշխարհագրութիւն պատկերազարդ ընդարձակ*, **1853**։

7. *Աշխարհագրական տախտակք*, **1695-1881**։

8. *Բժշկեան. (Հ. Մ.) — Ճանապարհորդութիւն 'ի Լեհաստան*, **1830**։

9. Եագըճեան (Հ. Ս.) — Տարերք աշխարհագրութեան, 1866։

10. Ինճիճեան (Հ. Ղ.) — Աշխարհագրութիւն հին Հայաստանի, 1822։

11. — Հնախօսութիւն Հայաստանի, 3 հատ. 1835։

12. — Վոսփոր. (իտալերէն), 1831։

13. Լազարովիչ — Նկարագիր Կալկաթայի, 1852։

14. Լանկլուա — Քառալեզուեան նկարագիր պատկերազարդ Վանաց Ս. Ղազարու. (գաղղիերէն), 1869. — (գերմաներէն), 1872. — (իտալերէն և անգլիերէն), 1874։

15. Ա. Համատարած աշխարհացոյց մեծ, զանազան չքեղ պատկերօք զարդարուած. տպագրեալ յԱմստերդամ, 1695. (Պղնձեայ տախտակները ութ կտոր կը գտնուին 'ի Ս. Ղազար)։

Բ. Աշխարհացոյց Ատլաս, փորագրեալ 'ի Վենետիկ, 'ի Մխիթարեանց, կը բովանդակէ հետևեալ տախտակները.

Եւրոպա, 1786. — Ասիա, 1787. — Ափրիկէ, 1786։ — Ամերիկա, 1787. — Երկիր Աւետեաց, 1746. — Հայաստան, ըստ հին և նոր աշխարհագրաց, 1751. — Համատարած քառակուսի, 1784, — Համատարած կիսագունտ, 1784։

16. Հեթում Պատմիչ — Պատմութիւն Թաթարաց, 1842։

17. Ճարեան (Հ. Աբ.) — Տարերք Երկրաչափութեան, 1843։

18. Մխիթար Աբբահայր — Աշխարհագրական և կենսագրական Բառգիրք Ս. Գրոց և Հայաստանի, 1749,

19. Պապիկեան (Հ. Հ.) — Տարերք Երկրաչափութեան, 1858։

20. Պրոնեան (Հ. Ս.) — Եռանկիւնաչափութիւն, 1810։

21. — Ընդարձակ Երկրաչափութիւն, 1794։

22. Սարգիսեան (Հ. Ն.) — Ճանապարհորդութիւն 'ի Մեծ և 'ի Փոքր Հայս, պատկերազարդ, 1864։

23. Սուքրեան (Հ. Ա.) — Աշխարհագրութիւն Մովսէսի Խորենացւոյ, նոր թարգմանութիւն գաղղիերէն բնագրաւն հանդերձ, բաղդատուած նոր ընտիր օրինակի հետ, ծանօթութեամբք, 1881։

24. Վլատըսլաւ Ձիկլինսքի — Ս. Ղազար Վենետկոյ. (լեհերէն), հանդերձ տեղեկութեամբք Լեհաստանի հայ գաղթականութեան վրայ, 1876։

25. Փափազեան (Գերապ. Ի.) — Երկրաչափութիւն գործնական, 1810։

26. Քաջունի (Հ. Մ.) — Աշխարհագրութիւն Հայաստանի, 1857։

27. — Համառօտ Հնախօսութիւն Հայաստանի, 1855։

28. Օղուզլուխեան (Հ. Դ.) — Նաւուղղութիւն, 1809։

## Զանազան աշխարհագրական տախտակներ.

1. Պոնտոս կամ Սեաւ Ծով, հայ և տաճիկ գրերով, փորագրեալ 'ի Վենետիկ, 1820։ — 2. Խրիմ, 1830։ — 3. Օսմանեան պետութիւն Եւրոպայի, 1791։ — 4. Մարմարա, 1805։ — 5. Ռուսի Հայաստան, գղղ. և ռուս գրերով, 1828։ — 6. Ռուսաստան. — Տեղագիծ նահանջման բիւրուն. Նախնի Ելլադա և հատուածք Յունաց. Նեղուց Կ. Պօլսոյ (տաճկերէն, հայ տառերով). Նոյնն իտալերէն. Տաճկաստան Եւրոպայ. Տաճ-

կաստան Ասիոյ. — Տեղագիր պաշարման Սիրակուսա քաղաքի. Ցատակագիծ Սիրակուսայ. — Տեղացոյց Աթենքի, Ճակատամարտին Պղատեայ, Շրջակայ վայրաց Աթենայ, Ճակատամարտին Սալամինայ, Մարաթոնի նաւամարտին. Կիրճին Թերմոպիլեայ, և այլն: — 7. Շիրակ գաւառ ընդարձակ, Տեղացոյց քաղաքին Անւոյ, նոր հրատարակեալք (1881):

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆ

*հրատարակեալք*

ԱՐՏԱՔՈՅ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

Եղեալք 'ի Հանդիսին Վենետկոյ.

29. (Աբէլ Ալթեաց.) — Վաղարշապատ, տարագրութիւն. տպ. 'ի Վաղարշապատ, 1874:
30. Ալպուռմ — Լուսանկար պատկերք և տեսարանք Հայաստանի:
31. Գասպարեան (Գ. Գ.) — Ընդհանուր տեսութիւն Նախնի և արդի միջնակ հնդկաքնակ ազգայնոց. Զմիւռնիա, 1879:
32. Խաչեան (Կարապետ Վ. Սեխեանցի) — Վէրք Տարօնոյ. Կ.Պօլիս, 1879:
33. Մանկունի — Այրիվանք կամ Գեղարդայ վանք. Վաղարշապատ, 1871:
34. Մանուէլ (Վարդ. Եպիսկոպոսեանցի) — Պատմութիւն անցից անցելոց Սեւանայ վանաց. Վաղարշապատ, 1871:

35. Մկրտչեան (Յովհ. վ.) — Ճանապարհորդութիւն 'ի Բարձր Հայս. Կ.Պօլիս, 1870։

36. Նարանեան (Պօղոս վ.) — Արտօսր Հայաստանի կամ Տեղեկագիր Բաղէշայ, Քարբերդու, և այլն։ Կ.Պօլիս, 1878։

37. — Տեղեկագրութիւն ընդհանուր վիճակաց Նիկոմիդիոյ, Սեբաստիոյ, Սիվրիհիսարու, Գաղատիոյ. Կ.Պօլիս, 1871-77։

38. Շահխաթունեանց (Յովհ. Եպիսկ.) — Ստորագրութիւն Կաթուղիկէ Էջմիածնի և հինգ գաւառացն Այրարատայ. 2 հտ. Էջմիածին, 1842։

39. Պէյլէրեան (Ա. Կ. վանեցի) — Գեղջկական հարսանիք 'ի Հայաստան. Կ.Պօլիս, 1870։

40. Ջալալեանց (Սարգիս վ.) — Ճանապարհորդութիւն 'ի Մեծն Հայաստան. 2 հատոր Տփխիս, 1842-58։

41. Սարգսեանց (Տ. Արիստակէս վ.) — Պանդուխտ Վանեցի. Նամակներ, երգեր, առածներ. Կ.Պօլիս, 1875։

42. Սեդրակեան (Արիստակէս վ.) — Հնութիւնք հայրենեաց 'ի գաւառին Երնջակու. Վաղարշապատ, 1872։

43. Սրուանձտեանց (Գարեգին վ.) — Թորոս Աղբար, Հայաստանի ճամբորդ. Կ.Պօլիս, 1879։

44. Վահան (Վարդ. Պարտիզակցի) — Խօսք զհայրենեաց. Կ.Պօլիս, 1879։

45. Փիրղալէմեանց (Ղևոնդ վ.) — Ճանապարհորդութիւն 'ի մայր Աթոռն Արարատեան. Կ.Պօլիս, 1871։

46. Ֆէրուխեան (Յարութիւն Պէյ) — Ճանապարհորդութիւն 'ի Բաբելոն ընդ Հայաստան. Արմաշ. 1876։

47. *Abich* (*H.*) — Vergleichende Geologische Grundzüge der Kaukasischen, Armenischen und Nordpersichen Gebirge: Prodromus einer Geologie der Kaukasischen Länder. St. Petersburg, 1858.

48. *Ainsworth* (*W.*) — Travels in the track of the Ten thousand Greeks. London, 1844.

49. — Travels and researches in Asia Minor, Mesopotamia, Caldea and Armenia. 2 vol. London, 1842.

50. *Anaclerio* (*Giuseppe*) — La Persia descritta. Relazione di un viaggio. Napoli, 1868.

51. *Aucher Eloy* — Relation de voyage en Orient, de 1830 à 1838. Revues et annotées par M. le Comte Jaubert. 2 vol. Paris, 1843.

52. *Barker Burckhardt* (*Wil*) — Lares and Penates, or Cilicia and its Governors, being a short historical account of that Province, from the earliest times to the present day. Edited by Will. Francis Ainsworth. London, 1853.

53. *Bartholomei* (*Général*) — Lettres numismathiques et archéologiques relatives à la Transcaucasie. St. Petersbourg, 1859.

54. *Beaufort Francis* — Karamania, or a brief description of the South Coast of Asia-Minor. London, 1817.

55. *Bedik* (*Petr.*) — Cehil-Sutun, seu Explicatio utriusque celeberrimi ac pretiosissimi Theatri Quadraginta Columnarum in Persiæ Orientis, etc. Viennæ Austriæ, 1678.

56. *Bergé* (*Adolf*) — Die Sagen und Lieder des Tscherkessen-Volkes, gesammelt von Kabardines Schora-Bekmursin-Nogmo. Leipzig, 1866.

57. *Bergeron* — Voyages faits en Asie-Mineur, etc. Hage, 1735.

58. *Bianchi* (*Aless.*) — Viaggi in Armenia, Kurdistan e Lazistan. Milano, 1863.

59. *Bodensted* (*Fried.*) — Die Völker des Kaukasus und ihre Freiheitskämpfe gegen die Russen. Ein Beitrag zur neusten Geschichte des Orients. Frankfurt am Main, 1849.

60. — Tausend und ein Tag im Orient. Berlin, 1850.

61. *Boré* (*Eugène*) — Memoires d' un voyageur en Orient, 2 vol. Paris, 1840.

62. — Arménie (Univers Pittoresque).

63. *Boullaye Le Gouz* — Les Voyages et les observations. Paris, 1657.

64. *Bryce* (*James*) — Transcaucasia and Ararat. London, 1878.

65. *Buhse* (*D.r*) — Eine Reise durch Transkaukasien und Persien in den Jahren 1847–1849, Berlin.

66. *Chanykoff* (*Nik.*) — Reise im nördlichen Kleinasien im Jahre 1846, Berlin.

67. *Charden* — Voyage en Perse et autres lieux de l' Orient, 5 vol. Paris, 1723.

68. *Chesney* — The Russo-Turkish Campaigns of 1828 and 1829, with a view of the present state of affairs in East. London, 1854.

69. *Chinon* (*P. Gabriel Capucin*) — Relations nouvelles du Levant: ou Traités de la Réligion, du Gouvernement et des Coûtumes des Perses, des Arméniens et des Gaures. Lion, 1671.

70. Шопена (И.)— Историческій памятникъ состоянія Армянской - Области въ

эпоху ея присоединенія къ Россійской-Имперіи. Санктпетербургъ, 1852.

71. *Creagh* (*James*) — Armenians, Koords and Turks, 2 vol. London, 1880.

72. *Curzon* (*Robert*) — Armenia, Erzerum. London, 1854.

73. *Deyrole* (*Théoph.*) — Voyage dans le Lazistan et l' Arménie 1869, Paris.

74. *Dubois* (*Fred. de Montpéreux*) — Voyage autour du Caucase, 6 vol. Paris, 1839.

75. *Edib-Mehemmed* — Itinéraire de Constantinople à la Mecque, en 1682. Imprimé en 1816-17, trad. par Bianchi.

76. *Eichwald* (*Ed.*) — Reise auf dem Caspischen Meere und in den Kaukasus, 2 vol. Stuttgart, 1834.

77. *Eynaud* — Les Arméniens dans l' Arménie Turque. (Bulletin de la Société de Geographie), Novemb. 1869, Paris.

78. *Favre* (*C.*) *et Mandrot* (*B.*) — Voyage en Cilicie. Paris, 1878.

79. *Filigier* — Beiräge zur Ethnographie Klein-Asiens. Breslau, 1875.

80. *Filippi* (*De*) — Viaggio in Persia. Milano, 1865.

81. *Flandin* (*Eugène*) — L' Orient, 2 vol. Paris, 1853.

82. *Fleurieu* — Etat présent de l' Arménie, tant pour le temporel que pour le spirituel: avec une description du pays et des mœurs de ceux qui l' habitent. Paris, 1694.

83. *Fontanier* — Voyage en Orient (1821-29). Paris, 1829.

84. *Fonton* (*Felix de*) — La Russie dans l' A-

sie Mineur, ou Campagnes du Maréchal Paskevitch en 1828 et 1829. Paris, 1840.

85. *Fraser* — Travels in Koordistan, Mesopotamia, etc. London, 1840.

86. *Gemelli Carreri* (*Giov. Franc.*) — Giro del Mondo, 6 vol. Napoli, 1699.

87. *Gile* — Lettres sur le Caucase et la Crimée. Paris, 1859.

88. *Görres* (*Joseph*) — Die Japhetiden und ihre gemeinsame Heimath Armenien. München, 1844.

89. *Grewingh* (*D.r C.*) — Die Geognostischen und Orographischen Verhältnisse des nördlichen Persiens. St. Petersburg, 1853.

90. *Hagemeister* (*Jules de*) — Essai sur les ressources territoriales et commerciales de l'Asie Occidentale. St. Pétersbourg, 1839.

91. *Hamilton* (*Will.*) — Researches in Asia Minor, Pontus and Armenia, 2 vol. London, 1842.

92. *Hasselquist* (*Fred.*) — Voyages dans le Levant, 1749-52. Paris, 1769.

93. *Herbert* (*Thomas*) — Relation du voyage de Perse. Paris, 1663.

94. *Hirschfeld* (*D.r G.*) — Bericht über eine Reise im südwestlichen Kleinasien, 1874.

95. *Hommaire de Hell* (*Xav.*) — Voyage en Turquie et en Perse, 4 vol. Paris, 1854-7.

96. *Jardot* — Révolutions et Migrations des Peuples de la Haute Asie. Paris. (Sans date).

97. *Jaubert* — Voyage en Arménie et en Perse. Paris, 1821.

98. *Ker-porter* (*Robert*) — Travels in Georgia, Persia, Armenia, 2 vol. London, 1825.

99. *Kiepert* — Ueber älteste Landes und Volksgeschichte von Armenien. Berlin, 1869.

100. — Memoir über die Construction der Karte von Klein-Asien und Türkisch Armenien in 6 Blatt. Berlin, 1854.

101. — Ueber di Lage der Armenischen Hauptstadt Tigranocerta. Berlin, 1878.

102. *Kinneir* (*John Macdonald*) — Journey through Asia Minor and Koordistan in the years 1813 and 1814. London, 1818.

103. *Klaproth* — Mémoire relative à l' Asie. Paris, 1824.

104. *Koch* (*Karl*) — Reise durch Russland und den Kaukasischen Isthmus in Jahren 1836-8, 2 vol. Stuttgart, 1843.

105. — Reise in Grusien, am Kaspischen Meere und im Kaukasus, 3 vol. Weimar, 1847.

106. *Kolenati* (*F. A.*) — Die Bereisung Hoch-Armeniens und Elisabethopol, etc. Dresden, 1858.

107. *Kotschy* (*D.r Theodor*) — Reise in den Cilicischen Taurus über Tarsus. Gotha, 1858.

108. *Langlois* (*Victor*) — Voyage dans la Cilicie et dans les montagnes du Taurus, 1852-53. Paris, 1861.

109. *Leandro* (*Fr.*) — Viaggio in Palestina, Persia e Mesopotamia, 1753-57, Roma.

110. *Lebrun* (*Corneille*) — Voyage au Levant. Paris, 1714.

111. *Lejean* (*Guillaume*) — Une nuit d' hiver dans l' Anti-Taurus, 1866. (Tour du Monde).

112. *Martin* (*Thomas George*) — Der Periplus des Pontus Euxinus, und der paraplus von Armenia. München, 1864.

113. *Mignan* (*Robert*) — A Winter journey to Koordistan, 2. vol. London, 1839.

114. *Millingen* (*Major Frederick*) — Wild life among the Koords. London, 1870.

115. *Moltke* — Briefe über Zustände und Begebenheiten in der Türkei aus den Jahren 1835 bis 1839. Berlin, 1841.

116. *Morery* (*Louis*) — Relations nouvelles du Levant. Lion, 1671.

117. *Morier* (*James*) — A Second Journey through Persia, Armenia and Asia Minor. London, 1818.

118. *Moynet* — Voyage au littoral de la Mer Caspienne, 1858, octob. (Tour du Monde).

119. *Ohsson* (*M. C. D'*) — Des peuples du Caucase et des pays au nord de la Mer Noire et de la Mer Caspienne dans le X siècle: Voyage d' Abou-el-Cassim. Paris, 1828.

120. *Olivier* (*G. A.*) — Viaggio nella Persia. Milano, 1816.

121. *Ouseley* (*Will.*) — Travels in Persia, etc. 3 vol. London, 1819.

122. *Parrot* (*Freidrich*) — Reise zum Ararat. Berlin, 1834.

123. *Petermann* (*H.*) — Reisen im Orient. Leipzig, 1860–1.

124. *Philippe* (*Rev. P.*) — Voyage d' Orient. Lion, 1669.

125. *Poullet* — Nouvelles Relations du Levant, 2 vol. Paris, 1668.

126. *Rauwolff* — Beschreibung der Reyss Armenian, etc. Augsburg, 1583.

127. *Sachau* (*Edu.*) — Ueber die Lage von Tigranokerta. Berlin, 1881.

128. *Sandreczki* (*C. D.*) — Reise von Smyrna bis Mosul, 2 vol. Stuttgart, 1857.

129. *Sandwith Humptry* — A Narrative of the siege of Kars., London, 1856.

130. *Sanson* — Voyage ou Relation de l' Etat présent du royaume de Perse. Paris, 1695.

131. *Schilberger* (*Johann*) — Reisen in Europa, Asia und Afrika. München, 1859.

132. *Schläfli* (*Alex.*) — Reisen in den Orient. Winterthur, 1864.

133. *Schulz* (*Ed.*) — Mémoire sur le Lac de Van et ses environs. (Journal Asiatic, 1840).

134. *Smith and Dwight* — Missionary Researches in Armenia. London, 1834.

135. *Southgate* (*Horat.*) — Narrative of a tour through Armenia, Kurdistan, etc. London, 1840

136. *Struys* (*Jean*) — Les voyages en Moscovie, en Tartarie, en Perse, aux Indes, etc. 3 vol. Lyon, 1682.

137. *Tavernier* (*J. B.*) — Les six Voyages en Turquie, en Perse, et aux Indes, etc. 3 vol. Paris, 1676.

138. *Tchihatcheff* (*P.*) — Lettres sur la Turquie. Bruxelles et Leipzig.

139. — Description de l' Asie Mineure, 4 vol. avec deux Atlas. Paris, 1853.

140. — L' Arménie et la Perse. Texte et gravures, 2 vol. Paris, 1842.

141. — Description de l' Arménie et la Perse, etc. Paris, 1842.

142. *Thevet* (*F. André*) — Cosmographie de Levant. Anvers, 1556.

143. *Tournefort* (*Pilton de*) — Relation d' un voyage du Levant, 3 vol. Lion, 1717.

144. *Vereschaguine* (*Basile*) — Voyage dans les provinces du Caucase, 1864-5. (Tour du Monde).

145. *Villotte* (*P. J.*)—Voyage d'un Missionaire de la Comp. de Jésus en Turquie, en Perse, en Arménie, en Arabie et en Barbarie. Paris, 1730.

146. *Vivien* (*de Saint Martin*) — Etude de Géographie ancienne et d' Etnographie asiatique, 2 vol. Paris, 1850.

147. — Un chapitre de Géographie Orientalc. (Annales des voyages. Janvier) 1867.

148. *Wagner* (*Moritz*) — Reise nach Kolchis und nach den Deutschen Colonien jenseits des Kaukasus. Leipzig, 1850.

149. — Reise nach Persien und dem Lande der Kurden, 2 vol. Leipzig, 1852.

150. — Reise nach dem Ararat und dem Hochland Armenien. Stuttgart, 1848.

151. *Warrington* (*W. Smith*) — Geological features of the country round the Mines of the Taurus in the Pashalic of Diarbekr, etc. 1857.

152. *Wilbraham* (*Rich.*) — Travels in the Transcaucasian Provinces of Russia. London, 1839.